# ԿԱՆՈՆ

## ՄԻԱԲԱՆԱԿԱՆ ՈՒԽՏԻՆ

ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ

## ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

Ի ՍՈՒՐԲ ԵՐՈՒՍԱՂԷՄ

ՎԵՐԱՔՆՆԵԱԼ

Ի ՁԵՌՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ԲԱՐԵՓՈԽԵԱԼ

Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ԵՒ

ՄԱՏՈՒՑԵԱԼ

ԱԶԳ. ԵՐԵՍՓ. ԺՈՂՈՎՈՅ

Ի ՎԱՒԵՐԱՑՈՒՄՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. ՍԱՐԸԵԱՆ

—

1887

# ԿԱՆՈՆ

# ՄԻԱԲԱՆԱԿԱՆ ՈՒԽՏԻՆ

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ

## ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

## Ի ՍՈՒՐԲ ԵՐՈՒՍԱՂԷՄ

### ԳԼՈՒԽ Ա.

### ԿԱԶՄՈՒԹԻՒՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ՅՕԴՈՒԱԾ 1. *ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ Միաբանութիւնը կը կազմուի Սրբոց Յակովբեանց Առաքելական Աթոռոյ Գահակալ Պատրիարքէն՝ որ Գլուխ է Միաբանութեան, եւ հետեւեալ կարգերէն, որք են՝*

| | | |
|---|---|---|
| *Եպիսկոպոսք* | *Թուով* | 5 |
| *Վարդապետք* | » | 40 |
| *Սարկաւագք* | » | 12 |
| *Դպիրք* | » | 12 |
| *Ժառանգաւոր աշակերտք* | » | 30 |
| *Բրձազգեաց եղբարք* | » | 80 |
| *Մայրապետ քորք* | » | 30 |
| | | 209 |

### Ա. ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ ՅԱՆԴԱՄԱԿՑՈՒԹԻՒՆ

ՅՕԴ. 2. *Սրբոց Յակովբեանց Միաբանութեան անդամ ընդունուելու փափաքող*

անձն պէտք է գրաւոր խնդիր մատուցանէ Ս. Պատրիարքին։ Իսկ ընդունուելու համար պայման է՝ 1. առողջ ըլլալ մարմնով. 2. 16էն մինչեւ 18 տարեկան հասակաւ՝ եթէ Ժառանգաւորաց Վարժարանի աշակերտութեան կ'ուզէ մտնել ներկայացողը, 18էն մինչեւ 40 տարեկան՝ եթէ Քրձազգեցից կարգը ընդունուիլ կը փափաքի, եւ 30էն մինչեւ 40՝ եթէ Մայրապետ է. 3. բարեբարոյ վկայեալ, եւ 4. Միաբանութեան մէջ ո՛ր եւ է գործով մը Ս. Աթոռոյ ծառայութիւն մատուցանելու կարող եւ պատրաստական ըլլալ։

ՅՕԴ. 3. Երկրորդ յօդուածոյ մէջ նշանակեալ հանգամանք մասնաւոր վկայագրով ստուգուելէ, եւ բժշկական քննութեամբ հաստատուելէ ետքը՝ ընտրելիին վարքն ու բարքը եւ յաջողակութիւնը հասկցուելու համար Տնօրէն Ժողովոյ կողմէն փորձոյ կենթարկուի։

ՅՕԴ. 4. Զկնի փորձոյ, ընտրելիին վկայագրերը եւ փորձոյ ժամանակ իր վրայ հըսկող Պաշտօնակալին տեղեկագիրը յատենի Տնօրէն Ժողովոյ կարդացուելով, եթէ ընդունելութիւնն որոշուի, Միաբանութեան Մայր-Տումարին մէջ անունը կարձանագրուի, եւ անմիջապէս պաշտօնը սահմանուելով՝ կը յանձնուի Տեսչութեան խնամոց ում կը պատկանի։

ՅՕԴ. 5. Եթէ անդամակցութեան խընդրարկուն արդէն Եկեղեցական դասէ է, աշխարհական, թարոյական եւ Եկեղեցական վի-

ճակը կանոնաւոր ըլլալն ստուգուելէ ետքն՝ «Միաբանութեան կանոնաց հնազանդութեամբ Ս. Աթոռոյ հաւատարմաբար ծառայելու» խոստմնագիրն առնուելով ձեռքէն, կը վճռուի ընդունելութիւնն Ս. Պատրիարքի հաւանութեամբ եւ Տնօրէն Ժողովոյ որոշմամբ։

## Բ. ՊԱՐՏՔ ԵՒ ԻՐԱՒՈՒՆՔ ՄԻԱԲԱՆԻՑ

ՅՕԴ. 6. Միաբանք պարտին իւրաքանչիւրն իր կարողութեան չափով ծառայութիւն մատուցանել Ս. Աթոռոյ։ Այն Միաբանը, որ պաշտօնի կը կոչուի, եւ առանց օրինաւոր արգելք ունենալու, կը մերժէ զայն եւ կը զլանայ իր ծառայութիւնը, պարտազանց կ՚ըլլայ եւ պատժապարտ։

ՅՕԴ. 7. Միաբանք իրաւունք ունին Ս. Աթոռէն ընդունել,— Ա. Բնակարան, Սնունդ, իսկ Սարկաւագունք, Դպիրք, Ժառանգաւորք եւ Կրձազդեացք նա՛եւ Հագուստ, եւ իւրաքանչիւրն, ինչպէս նաեւ Վարդապետք եւ Եպիսկոպոսունք իրենց անձնական մանր ծախքն հոգալու համար՝ Միաբանական անունով տարեկան մը, որ անձնիւր կարգի եւ աստիճանի յատուկ բաժանում ունի, եւ Պաշտօնէական անունով տարեկան մը, որ իւրաքանչիւր պաշտօնի յատկացած ըլլալով կը տրուի Պաշտօնակալաց,— Բ. Հիւանդութեան ժամանակ Դարման, եւ ծերութեան ժամանակ Խնամք.— Գ. Ուսմունք եւ Դաստիարակութիւն, անոնք՝ որ յարմարութիւն ունին, եւ ի մասնաւորի անոնք՝ որ Եկեղե-

ցականութեան կը պատրաստուին. — Դ. Եկեղեցական Կարգ եւ Ս. Աստիճան՝ անոնք միայն որ արժանաւորութիւն եւ փափաք ունին, եւ որոց զանազան աստիճանի բարձրացումն՝ Լուսարարապետի եւ Դպրոցաց Տեսչի Տեղեկագրոց վրայ Տնօրէն Ժողովով կ'որոշուի, բաց 'ի Եպիսկոպոսական աստիճանի բարձրացումէն, որ Տնօրէն Ժողովոյ առաջարկութեամբ Միաբանական Ընդհանուր Ժողովով կ'որոշուի։

Այս որոշումներն կը գործադրուին Ս. Պատրիարքին հաւանութեամբն։

ՑՕԴ. Ց. Միաբանք ազատ են իրենց անձնական դրամով իրենց անձին յատուկ անշարժ կալուած գնելու կամ կառուցանելու, միայն թէ այդ կալուածն եթէ վագըֆ գետին է, պէտք է պատկանի միմիայն եւ անպատճառ Երուսաղիմայ վագըֆին, իսկ եթէ զուտ (զօրք) մուլք է, միաբանք պարտին նախապէս ճէճի միւլք հէօճէթով եւ կամ օրինաւոր վագըֆիէով վանքին վագըֆ ընելով հաստատել ըստ տիրող օրինաց Տէրութեան թէ յետ մահուան Ս. Երուսաղիմայ Աթոռն միակ ժառանգն ու տէրն է այդ կալուածի։

Եթէ Միաբանք ուզեն անշարժ կալուած գնել կամ կառուցանել, կը պարտաւորին կանխաւ զեկուցանել Ս. Աթոռոյն եւ կատարել վերոյնշանակեալ օրինական գործողութիւններն. Հակառակ պարագայի մէջ պարտազանց կը նկատուին, եւ ըստ այնմ պարտ ու պատշաճը կը տնօրինուի։

## Գ. ԱՄԲԱՍՏԱՆՈՒԹԻՒՆ

ՅՕԴ. 9. *Ո՞ր եւ է Միաբան կրնայ ամբաստանութեան ենթարկուիլ, բայց ամբաստանողը պարտի գրաւոր ներկայացնել իւր ամբաստանութիւնն առ Ս. Պատրիարքն։*

*Սրբազան Պատրիարքին յանձնարարութեամբն ամբաստանութիւնք կը քննուին եւ կը վճռուին Տնօրէն Ժողովոյ մէջ։*

## Դ. ՀՐԱԺԵՇՏ Ի ՄԻԱԲԱՆԱԿԱՆ ԿԵՆԱՑ

ՅՕԴ. 10. *Ո՞ր եւ է Միաբան իրաւունք ունի հրաժեշտ տալ Միաբանական կեանքէ հետեւեալ պայմաններով.*

*Ա. Երբ Միաբանը այնպիսի հիւանդութեանց կ'ենթարկուի, որ չը ներեր նմա այլ եւս շարունակել Միաբանական կեանքը։*

*Բ. Երբ Միաբանը արդէն ծառայութիւն մատուցած է Ս. Աթոռոյն՝ առնուազն երեք տարի՝ եթէ ժառանգաւորաց Վարժարանի աշակերտելով ուսմունքն աւարտած է եւ չէ՛ ուզեր կամ յարմար չէ գտնուեր Եկեղեցական կարգը մտնելու, եւ եօթն տարի՝ եթէ Եկեղեցական գաւազն է։ Սոյն պարագայից մէջ ծառայութեան տարիները կը հաշուին ժառանգաւորաց համար՝ Վարժարանէն ելնելով Դպրաց կամ Փրձազգեցից կարգը մտած օրէն սկսեալ. Եկեղեցականաց համար՝ գըտնուած աստիճանին ընդունած օրէն սկսեալ. իսկ դուրսէն եկած Եկեղեցականներուն հա-*

մար՝ Միաբանութեան մէջ ընդունուած օ-
րէն սկսեալ ։

**ՅՕԴ. 11.** Մի եւ միւս պայմաններով հը-
րաժարիլ ուզող Միաբանք խնդրագիր կը
մատուցանեն Տնօրէն ժողովոյ, որ պէտք ե-
ղած հետազօտութիւնն ընելով, եթէ իրա-
ւացի գտնէ խնդիրը՝ կը վճռէ հրաժարումը ։

**ՅՕԴ. 12.** Հրաժարեալ Միաբանը պար-
տի իր հաշիւներն ու պաշտօնավարութեան
համարը կատարելապէս տալ, եւ ապա իր
անձին սեփական գոյքն առնելով բաժնուիլ
Միաբանութենէն ։

**ՅՕԴ. 13.** Հրաժարեալ Միաբաններէն
անոնք որ կը խնդրեն մնալ միշտ անդամ
Միաբանական Ուխտին Սրբոց Յակովբեանց,
պա՛րտին խոստմնագրով յանձն առնուլ՝ 1.
Ս. Աթոռոյ կողմէն ո՛ր եւ է պարագայի մէջ
իրենց յանձնարարեալ ծառայութիւնները
յօժարակամ կատարել, պայմանաւ՝ որ սոյն
ծառայութիւնք չը պարտաւորեն զիրենք վե-
րըստին Միաբանական կենաց լուծին ներքեւ
մտնելու՝ յորմէ հրաժարած են, եւ կարենան
համաձայնիլ իրենց վերջէն ընդունած ազգա-
յին հրապարակական պաշտօնի կատարման
հետ՝ եթէ ունին. եւ 2. առանց Ս. Աթո-
ռոյ հրամանին Եկեղեցական աստիճանի բարձ-
րացում չ՛ընդունիլ, եւ նոյն ժամանակ կըս-
տանան վկայագիր մը, որ իրաւունք կուտայ
իրենց՝ Ա. ստորագրել միշտ «Ի Միաբանա-
կան Ուխտէն Սրբոց Յակովբեանց», Բ. գալ
վերստին Միաբանական կենաց մէջ մտնելու

երբ եւ կամին, պայմանաւ՝ որ անարատ ներկայանան բարոյապէս եւ նիւթապէս. եւ Գ. քուէ ընդունիլ Միաբանական Ընդհանուր Ժողովէն՝ Պատրիարքական ընտրելութեան եւ Աւագ—Լուսարարութեան համար, եթէ ունին օրինական հանգամանք սոյն պաշտօններու ընտրելութեան ։

ՅՕԴ. 14. Նախորդ յօդուածոյ համաներման տնօրէնութիւն կ՚ըլլայ եւ մի եւ նոյն իրաւունքը կը տրուի նաեւ Միաբանութեան այն անդամներուն, որք ծառայութեան պայմանեալ ժամանակը չը լրացուցած (Յօդ. 10) Ս. Աթոռոյն թոյլտուութեամբ պաշտօնի կը կոչուին Ազգային Կեդրոնական Վարչութենէն, եւ յանձն կառնուն խոստմնագրով՝ Ա. Մատուցանել Ս. Աթոռոյ, սովորական պարագայից մէջ՝ այն ամեն ծառայութիւնք, որք կը խնդրուին իրենցմէ, եւ որք չեն հակառակիր իրենց Ազգային նոր պաշտօնին կատարման հետ. Բ. Արտաքոյ կարգի պարագայից մէջ ձգել դրսի պաշտօնն եւ դառնալ գալ 'ի Ս. Աթոռն, երբ Սա' անհրաժեշտ կարօտութիւն զգալով կը կոչէ զնոսա առժամապէս իր անմիջական ծառայութեան. եւ Գ. երբ հրաժարի այդ պաշտօնէն անմիջապէս վերադառնալ 'ի Ս. Աթոռն ։

Ե. ԱՐՏԱՔՍՈՒՄՆ Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ

ՅՕԴ. 15. Այն ամեն Միաբանք, որ կանոնաց անսաստելով անվայել վարք կ՚ունենան, կամ անհաւատարիմ կը գտնուին եւ

կամ առանց օրինաւոր պատճառի իրենց յանձնուած պաշտօնը կը մերժեն կամ խոյս կուտան անկէ, կ՚արտաքսուին Միաբանութենէն հետեւեալ պայմաններով .

Ա. Նոյն տեսակ յանցապարտ Միաբանը՝ նախ իր անմիջական մեծէն յուղղութիւն կը յորդորուի երկիցս եւ երիցս, եւ եթէ անուղղայ մնայ, դանդատագրով կը ներկայուի Տնօրէն Ժողովոյ, որ առ առաւելն մէկ ամսուան մէջ պէտք եղած քննութիւնն ընելով կուտայ իր վճիռը, եւ յորդոր կամ պատիժ ինչ որ արժան է եւ պատշաճ՝ 'ի գործ կը դնէ զնա 'ի կարգ բերելու .

Բ. Իսկ եթէ յանցապարտը դարձեալ շարունակէ իր ընթացքը, Տնօրէն Ժողովը դատաստանաւ կը վճռէ անոր արտաքսումը՝ եթէ դպիր կամ Գրձագգեաց կամ Մատրապետ է, եւ Արքազան Պատրիարքը կը գործադրէ . իսկ եթէ Եկեղեցական ոք՝ միաձայնաւոր Տեղեկագրութեամբ անոր արտաքսումը կառաջարկէ Միաբանական Ընդհանուր Ժողովոյն .

ՅՕԴ. 16. Արտաքսեալ Միաբանը նախ պարտի իր հաշիւն ու համարը կատարելապէս տալ, եւ ապա իր անձին սեփական գոյքն առնելով, հեռանալ Միաբանական Ուխտէն, եւ նաեւ Ս. Երուսաղէմէն՝ եթէ Եկեղեցական կարգէն է .

ՅՕԴ. 17. Այն Միաբաններն՝ որք կամ օրինաւորապէս հրաժարելով Միաբանական կեանքէ, եւ կամ Ս. Աթոռոյ թոյլտուութեամբ ազգային պաշտօնի կոչուելով, անդամ. մնացած են Սրբոց Յակոբեանց Ուխ-

ածն (Յօդ. 13, 14), բայց իրենց խոստմանց դրժելով չեն կատարեր խոստմնագրով յանձնառեալ պայմանները, եւ կամ իրենց վարուք եւ գործովք անպատուութիւն կը պատճառեն Ուխտին՝ որոյ անդամ են, եւ յետ երկիցս եւ երիցս յորդորուելոյ անուղղայ կը մնան, Տնօրէն Ժողովոյ առաջարկութեամբ Միաբանական Ընդհանուր Ժողովոյ կողմէ կարգալուծութեան պատուաքսումն եւ Ս. Պատրիարքն կը գործադրէ։

ՅՕԴ. 18. Արտաքսեալ Միաբանից անունները եւ պատճառները կը նշանակուին Միաբանութեան Մայր—Տումարին, եւ առ Ազգային Երեսփոխանական Ժողով մատուցուած տարեկան Տեղեկագրութեան մէջ եւ Եկեղեցական արտաքսելոց համար ամեն անգամ եւ անմիջապէս Տեղեկագիր կը տրուի նաեւ Ազգային Պատրիարքարանի եւ Արարատեան Մայր—Աթոռոյ։

## Դ. ՎԱԽՃԱՆ ՄԻԱԲԱՆԻՑ

ՅՕԴ. 19. Ո՛ր եւ է Միաբան թէ՛ վանքին մէջ եւ թէ՛ դուրս օտար երկիր վախճանած ժամանակ, բոլոր գոյքը ՚ի գիր կ՚առնուին, եւ հաշիւները տեսնուելով կը կարգադրուին Տնօրէն Ժողովոյ միջոցաւ։

ՅՕԴ. 20. Վախճանեալ Միաբանից օրինաւոր ժառանգն Ս. Աթոռն ըլլալով, անոնց գոյքէն Ս. Աթոռոյն եւ այլոց վերաբերեալ եւ պատահապէս իրենց քով գտնուած դրամ,

անօթ, զգեստ, գիրք եւայլն, իրենց տեղը յանձնուելով, ի՛նչ որ աւելնայ՝ Ս. Աթոռոյն կ՚անցնի 'ի յիշատակ անուան նորա, եւ ամենայն ինչ կանոնաւորապէս արձանագրուելով Ատենագրութեանց մէջ։ Մի եւ նոյնն կը գործադրուի նաեւ Լուսարարապետի մահուան ատեն նորա սենեկի եւ սեփական գոյից նկատմամբ, սակայն անմիջապէս՝ ըստ սովորութեան՝ Տնօրէն Ժողովոյ միջոցաւ Ս. Յակոբայ Աւանդատան դուռը կը կնքուի եւ բանալիները կնքոյ ներքեւ կը պահուին մինչ ցընտրութիւն եւ հաստատութիւն նոր Լուսարարապետի։ Իսկ Պատրիարքի վախճանման ատեն վախճանելոյն եւ Պատրիարքարանի գոյից քննութիւնն Միաբանական Ընդհանուր Ժողովով ընտրեալ Քննիչ Մասնախմբի մը գործակցութեամբ կը կատարուի (Յօդ. 24)։

## ԳԼՈՒԽ Բ.

## ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

**ՅՕԴ. 21.** Սրբոց Յակոբեանց Առաքելական Աթոռոյ Վարչութիւնը յանձնուած է Երուսաղէմի Ս. Պատրիարքին, որ կը գործէ օրինաց սահմանին մէջ՝ ըստ տրամադրութեան սոյն կանոնագրոյ՝ աջակցութեամբ Միաբանութեան։

Պատրիարք եւ Միաբանութիւն համարատու են առ Ազգն՝ Կ. Պոլսոյ Երեսփոխանական Ժողովոյն միջոցաւ։

## Ա. ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ

ՅՕԴ. 22. *Պատրիարքը Սրբոց Յակոբեանց Առաքելական Աթոռոյ ցկեանս Գահակալն է Գլուխ համանուն Միաբանութեան, Նախագահ Միաբանական ընդհանուր եւ Տնօրէն ժողովոց եւ Պետ Գործադիր Իշխանութեան։*

ՅՕԴ. 23. *Պատրիարքին պաշտօնն է միանգամայն եւ պարտաւորութիւնը՝ Միաբանութեան կանոնագրին ճշդիւ հետեւողութեամբ,*

*Ա. Կառավարել հայրաբար Միաբանական Ուխտն Սրբոց Յակոբեանց, եւ օր աւուր բարեկարգութեամբ եւ գիտութեամբ առաւել զարգացմանն հոգ տանել,*

*Բ. Տնօրինական Ս. Տեղեաց եւ այլ ուխտատեղեաց նկատմամբ Ազգային սեփականութեանց եւ արտօնութեանց անկորուստ եւ պայծառ պահուելուն հսկել,*

*Գ. Ս. Աթոռոյ սեփական Վանօրէից եւ կալուածոց պահպանութեան եւ բարգաւաճմանն հոգ տանել.*

*Դ. Այն հաստատութեանց շնորհիւ եւ Ս. Աթոռոյ կարողութեան չափով՝ Ազգային դաստիարակութեան ծաւալմանն օժանդակել։*

*Ե. Ս. Աթոռոյ Թեմական ժողովրդոց Առաջնորդական խնամք տանել.*

*Զ. Եւ՝ իբր միջնորդ Միաբանական յարաբերութեանց, ամենայն Հայոց կաթողիկոսութեան պարտ ու պատշաճ մեծարանքն ընծայել առ Մայր-Աթոռն Արարատեան.*

Ազգային Կեդրոնական Վարչութեան աջակցութեամբ՝ հսկել Ս. Աթոռոյ իրաւանց եւ պարտեաց վրայ, համաձայն Կանոնագրիս եւ Ազգային Սահմանադրութեան. խաղաղութիւն ունելով հանդերձ ընդ օտարազգի Քրիստոնեայ Միաբանութիւնս՝ հսկել անկորուստ պահելու Ազգին իրաւունքն եւ անաղարտ՝ Միաբանութեան պատիւն. անվթար պահել հրովարտակօք շնորհեալ եւ վաւերագրօք հաստատեալ առանձնաշնորհումներըն, արտօնութիւններն եւ աւանդական հնաւանդ սովորութիւններն, վայելուչ յարաբերութեամբք թէ՛ ընդ Նախարարս, թէ՛ ընդ բարձրագոյն պաշտօնակալս եւ թէ՛ ընդ տեղական կառավարութիւնն:

ՅՕԴ. 24. Երբ Ս. Երուսաղէմի Պատրիարքական Աթոռը ո՛ր եւ է պատճառաւ թափուր մնայ, Պատրիարքական Փոխանորդը Տնօրէն Ժողովոյ խորհրդակցութեամբ, Միաբանական Ընդհանուր Ժողով գումարել տալով՝ ընտրել կուտայ,

Ա. Երեք անձերէ բաղկացեալ Քննիչ Մասնախումբ մը, որ պաշտօն ունի Տնօրէն Ժողովոյ հետ Պատրիարքի գոյքն եւ ընդհանրապէս Պատրիարքարանի մէջ գտնուած ամեն բան 'ի գիր առնուլ, եւ ցուցակաւ Տնօրէն Ժողովոյն յանձնելով՝ տեղեկագիր մատուցանել Միաբանական ընդհանուր Ժողովին, (Յօդ. 19, 20), եւ անմիջապէս տեղեկագրել Կեդրոնական Վարչութեան, իսկ Տնօրէն Ժողովը Պատրիարքարանը կնքոյ տակ կը պահէ մինչ ցպաշտօնակալութիւն նոր Պատրիարքի, եւ.

Բ. Պատրիարքական Տեղակալը՝ որ քուէ-իւ բացարձակ առաւելութեամբ կ՚ընտրուի միանուն քուէով, եւ իր ընտրութեան հաստատութեան պաշտօնագրոյն Կ. Պոլսէն գալէն յետոյ կը վարէ իր պաշտօնը ըստ 25րդ յօդուածոյ ։

ՅՕԴ. 25. Պատրիարքի վախճանման պատճառաւ ընտրուած Տեղակալին պաշտօնն է Պատրիարքի ընտրական գործողութեանց նախագահել, եւ մինչեւ ցԳահակալութիւն նորընտիր Պատրիարքի՝ անոր պաշտօնը վարել ըստ Կանոնագրի Միաբանութեան ։

ՅՕԴ. 26. Ս. Երուսաղէմի Առաքելական Աթոռոյ Պատրիարքն Ազգային Երեսփոխանական ժողովով կ՚ընտրուի Միաբանութեան ներկայած Եպիսկոպոսաց մէջէն, որոց ցուցակը կը պատրաստուի հետեւեալ կերպիւ.

Նախ՝ Միաբանական Ընդհանուր ժողով կը գումարի՝ Միաբանութեան ամբողջ Եկեղեցական անդամոց կէսէն գէ՛թ մէկ աւելի թուով, ընդ նախագահութեամբ Պատրիարքական Տեղակալի, որ կը յիշեցնէ ժողովականաց Պատրիարքական ընտրելութեան արժանաւորութեան հանգամանքը եւ կը հրաւիրէ զնոսա խղճի մտօք կատարել իրենց ընտրութիւնը ։

Իւրաքանչիւր ընտրող թղթի մը վրայ կը գրէ այն ամեն Միաբան Եպիսկոպոսաց եւ Վարդապետաց անունները, որք երեսուն եւ հինգ տարին լրացուցած, եւ Օսմանեան Տէրութեան հպատակ ըլլալով, ըստ իւր խղճի՝

Կրօնական, բարոյական եւ ուսումնական բարեմասնութեամբք արժանի են Պատրիարքական Գահը բարձրանալու ։

Քուէհամար կը կատարուի սոյն քուէից, եւ առաւելագոյն քուէ ստացող անուններէն քուէից առաւելութեան կարգաւ եօթն անձինք որոշուելով՝ **Առաջին ցուցակ** մը կը պատրաստուի **Եօթն ընտրելեաց** ։

Ժողովականք երկրորդ անգամ քուէարկութեան կը հրաւիրուին՝ սոյն **Եօթն ընտրելեաց ցուցակին մէջէն** միայն **երեք** անձի վրայ քուէնին ամփոփելու պայմանաւ. եւ քուէհամար կատարուելով **Երկրորդ ցուցակ** մը կը պատրաստուի **Երեք ընտրելեաց**՝ իւրաքանչիւրին ընդունած քուէից առաւելութեան կարգաւ. իսկ եթէ՝ երկու ընտրութեանց ժամանակ հաւասար քուէներ պատահին՝ վիճակաւ կ'որոշուի Ընտրելին, եւ **սոյն երեք ընտրելեաց ցուցակ**՝ իբր **արժանաւորագունից ընտրելեաց ցուցակ**՝ հանդերձ առաջին **եօթն ընտրելեաց ցուցակաւ** եւ իւրաքանչիւր ընտրելւոյ անցեալ պաշտօնավարութիւնը նկարագրող Տեղեկագրով կը ներկայուի Ազգային Երեսփոխանական Ընդհանուր Ժողովոյ, որ **անոնց մէջէն** կ'ընտրէ զՊատրիարքն Ս. Երուսաղէմի, Կ. Պոլսոյ Պատրիարքի ընտրութեան տրամադրութեան համեմատ ։

**ՅՕԴ. 27.** Նորընտիր Պատրիարքն՝ եթէ վարդապետ է, Միաբանական Ընդհանուր Ժողովոյ վկայականով եւ Կ. Պոլսոյ Պատրիարքի յանձնարարականով Ս. Էջմիածին կուղեւորի, եւ Եպիսկոպոսութեան աստիճանի

կը բարձրանայ, եւ ի վերադարձին յԱտենի Սրբոց Յակոբեանց Տաճարին եւ 'ի ներկայութեան Միաբանական Ընդհանուր Ժողովոյ, հանդիսաւորապէս ուխտ ընելով «Հաւատարիմ մնալ Տէրութեան, Ազգին եւ Ս. Աթոռոյն Երուսաղէմի, եւ հսկել անթերի գործադրութեան կանոնագրի Միաբանութեան» կը բազմի յԱթոռն Պատրիարքական, եւ կը տեղեկագրէ առ Ազգ. Ժողովն իւր ուխտին կատարումն:

Իսկ եթէ Եպիսկոպոս է, ընդունելով իւր ընտրութեան եւ հաստատութեան պաշտօնագրերն, կը կատարէ վերոյիշեալ ուխտն եւ կը բազմի յԱթոռն Պատրիարքական:

Ս. Եկեղեցեաց մէջ Պատրիարքի անուան յիշատակութիւնը կսկսի իր ուխտի կատարումէն անմիջապէս յետոյ:

## Բ. ՏՆՕՐԷՆ ԺՈՂՈՎ

ՅՕԴ. 28. Տնօրէն ժողովը կը կազմուի՝ Լուսարարապետէն, որ անփոփոխ անդամ է, եւ պարբերաբար փոփոխելի վեց անդամներէ:

ՅՕԴ. 29. Տնօրէն ժողովոյ անդամք չորս տարի պաշտօն վարելու պայմանաւ կ'ընտրուին Միաբանակա. Ընդհանուր ժողովէն, առաջին անգամ Պատրիարքին՝ Լուսարարապետին հետ պատրաստած կրկնաթիւ ցանկին վրայ, առաջին ընտրութենէն երկու տարի վերջը երեք անդամք վիճակաւ, եւ այնուհետեւ երկու տարին մի անգամ պաշտօնավարութեան քառամեայ շրջանը լրացնող

անդամք կը դառնային, որոց տեղը Միաբանական Ընդհանուր Ժողովը նոր երեք անդամներ կ'ընտրէ՝ Ս. Պատրիարքին՝ մնացեալ անդամոց հետ պատրաստած կրկնաթիւ ցանկին վրայ։

Թէ՛ միանգամ եւ թէ՛ կարգաւ դադարեալ անդամք վերընտրելի են։

ՅՕԴ. 30 Տնօրէն Ժողովը կանոնաւորապէս շաբաթը երկու՝ իսկ ստիպողական հարկին աւելի նիստ կ'ընէ, կը նախագահէ Ս. Պատրիարքը (կամ Փոխանորդը 'ի բացակայութեան Ս. Պատրիարքին), կ'առաջնորդուի իւր Դիւանէն՝ կազմեալ մէկ Ատենապետէ եւ մէկ Ատենադպրէ, զորս իւր մէջէն կ'ընտրէ երկու տարի պաշտօն վարելու պայմանաւ։

ՅՕԴ. 31. Տնօրէն Ժողովոյ պաշտօնն է հաւանութեամբ Ս. Պատրիարքի,

Ս. Աթոռոյ մեծ պաշտօնատարաց կողմէ ներկայուած ճղաւոր եւ ծանրակշիռ գործերը տնօրինել, նախապէս ստանալով անոնց կարծիքն եւ դիտողութիւնն.

Ստորակարգեալ պաշտօնէից ընտրութիւնները կատարել.

Վարչական հրահանգներն եւ տնօրէնութիւնները սահմանել.

Եւ, 'ի մի բան, տնօրինել այն ամէն գործերն, որք իւրաքանչիւր պաշտօնատարի իրաւասութենէն վեր կը դատուին։

Նոյնպէս, Տնօրէն Ժողովոյ պաշտաման կը պատկանի, հաւանութեամբ միշտ Ս. Պատրիարքի, Ս. Աթոռոյ վարկը պահելու համար 'ի հարկին փոխառութեան պէտքն ու պայ-

մանները սահմանել, կալուածական գնումն եւ՝ ըստ հաստատեալ կանոնաց՝ վաճառումն ընել, Միաբանից ընդունելութիւնն որոշել, ամբաստանութիւնները քննել, հրաժարումը վճռել, աստիճանի բարձրացման արժանաւորութիւնն (բաց ի Եպիսկոպոսներէ) որոշել, եւ 'ի դէպս մահուան Միաբանից սեպհական գոյից վրայ կանոնական տրամադրութիւնն 'ի գործ դնել ։

ՅՕԴ. 32. Տնօրէն ժողովը ամեն ամսագլուխ պաշտօնէից հաշիւները կը քննէ, չորս ամիսն անգամ մը Ս. Աթոռոյ ելեւմտից վիճակն ստուգելով հարկաւոր տնօրէնութիւնները կընէ, ամեն տարեգլուխ անցելոյն հաշիւները կը փակէ, եւ յաջորդին ելմտացոյցը կանխաւ յարդարելով՝ բացատրական Տեղեկագրութեամբ կը ներկայէ Միաբանական Ընդհանուր ժողովոյ ։

ՅՕԴ. 33. Տնօրէն ժողովը համարատու է առ Միաբանական Ընդհանուր ժողովն, զոր կը կատարէ տարեկան համառօտ Տեղեկագրութեամբ, որոյ մէջ խնամով պիտի նշանակէ,

Ա. Միաբանական անդամոց ընդունելութեան, պաշտօնավարութեան, հաւատարիմ ծառայութեանց համար եղած վարձատրութեանց, ձեռնադրութեանց, հրաժարման եւ մահուան վերաբերեալ տնօրէնութիւնքն ։

Բ. Միաբանական անդամոց ուսումնական յառաջադիմութեան, եւ ընդհանրապէս Ազգային Դաստիարակութեան նկատմամբ գործադրուած միջոցները եւ արդիւնք նոցին ։

Գ․ Տնօրինական Ս․ Տեղեաց եւ այլ Ուխտատեղեաց մէջ Օտարաց հետ ընկերովի եւ առանձինն Ազգային պաշտօնութեանց եւ սեփականութեանց մասին պատահած նշանաւոր դէպքերն եւ անոնց նկատմամբ ընդ Ազգային Կեդրոնական Վարչութեան, ընդ Տեղական Կառավարութեան, ընդ Քրիստոնեայ Օտարազգիս, եւ ուղղակի ընդ Նախարարս Տէրութեան կամ այլ պաշտօնակալս տեղի ունեցած յարաբերութիւնք եւ արդիւնք նոցին ։

Դ․ Բոլորեալ տարւոյն ելմտական ճշգրիտ վիճակն բաղդատմամբ ենթադրեալ ելմտացոյցին, եւ 'ի մասնաւորի փոխառութեանց եւ կալուածական գնմանց եւ վաճառմանց եւ պարտուց վճարման նկատմամբ 'ի գործադրուած միջոցներն եւ արդիւնք նոցին ։

Ե․ Յաջորդ տարւան ենթադրեալ Ելմտացոյցն եւ Ելեւմտից հաւասարակշռութեան համար որոշուած միջոցներն ։

ՅՕԴ․ 34․ Տնօրէն Ժողովոյ անդամք չեն կրնար ուրիշ պաշտօն ստանձնել ոչ իրենց անդամակցաց յատուկ եւ ոչ անոնց ստորակարգեալ պաշտօններէն, ինչպէս նաեւ չեն կրնար միանգամայն Տնօրէն Ժողովոյ անդամ եւ Ընդհանուր Ժողովոյ Ատենապետ գտնուիլ ։

Իսկ եթէ երբէք պաշտօն ստանձնեն, կը դադրին այն պաշտօնավարութեան միջոցին Տնօրէն Ժողովոյ անդամակցութենէն ։

## Գ. ՄԻԱԲԱՆԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

ՅՕԴ․ 35․ Միաբանական Ընդհանուր Ժողովոյ անդամ են Միաբանութեան բոլոր Ե-

կեդրոնական անդամներն, մինչեւ 'ի Սարկաւագունս՝ 'ի միասին համարեալ։

**ՅՕԴ. 36.** Ս. Պատրիարքը կը նախագահէ Ընդհանուր Ժողովոյ, եւ Ս. Աթոռը Թափուր եղած ժամանակ՝ Պատրիարքական Տեղակալը։ Բայց Ընդհանուր Ժողովն իր մասնաւոր Դիւանն ունի՝ Ատենապետ եւ Ատենադպիր եւ Փոխանորդներէ կազմեալ, զորս երկու տարի պաշտօն վարելու պայմանաւ կընտրէ իր մէջէն գաղտնի քուէարկութեամբ։

**ՅՕԴ. 37.** Ընդհանուր Ժողովն կը գումարուի,

**Ա. Կանոնաւորապէս** ամեն տարեգլուխ (Մայիս) Տնօրէն Ժողովոյ համարատուութիւնը առնելու եւ առ Ազգային Երեսփոխանական Ժողովն իր համարը տալու, եւ՝

**Բ. Պատահապէս** երբ Ս. Պատրիարքը, կամ Տնօրէն Ժողովը մասնաւոր խնդրոյ մը համար հարկ տեսնեն, եւ կամ Ընդհանուր Ժողովոյ Ս. Երուսաղէմի մէջ գտնուող անդամոց մէկ երրորդ մասը բացորոշ խնդրագրով հայցեն անոր գումարումը։

**ՅՕԴ. 38.** Ս. Պատրիարքը՝ կամ Ս. Աթոռոյ Թափուր ժամանակ Տեղակալն, եւ Ս. Պատրիարքի բացակայութեան միջոցին Պատրիարքական Փոխանորդը կը հրաւիրէ զանդամս 'ի ժողով, ամեն անգամ Օրակարգի խնդիրը գէթ 24 ժամ առաջ գրով ծանուցանելով ամեն մէկուն։

ՅՕԴ. 39. Ս. Երուսաղէմ գտնուող Միաբանական Ընդհանուր ժողովոյ անդամոց թուոյն կէսէն մէկ աւելին բաւական է օրինաւոր Ատեան կազմելու եւ ամեն խնդիր լուծելու եւ ընտրութիւններն ընելու, բաց 'ի Պատրիարքական ընտրելեաց, Լուսարարապետի եւ Տեղակալի ընտրութիւններէն՝ որոց համար Ընդհանուր ժողովոյ բոլոր անդամոց կէսէն գէ՛թ մէկ աւելի անդամոց ներկայութիւնն անհրաժեշտ է։

ՅՕԴ. 40. Միաբանական Ընդհանուր ժողովոյ պաշտօնն է,

Ա. Ընտրել Պատրիարքութեան եւ Տեղակալութեան ընտրելիներն ինչպէս նաեւ Լուսարարապետն. ընտրել Տնօրէն ժողովոյ անդամներն ըստ 29րդ յօդուածոյ։

Բ. Միաբանական Վարչութեան եւ նոյն իսկ իրեն համար մասնաւոր կանոնադրութիւններ հաստատել կամ պայմանեալ ժամանակին բարեփոխել, Տնօրէն ժողովէն առաջարկեալ խնդիրները լուծել, Եպիսկոպոսութեան ընտրելեաց արժանաւորութիւնը քուէարկել, Տնօրէն ժողովոյ տեղեկագրին վրայ՝ Միաբանից արտաքսումն արտասանել, եւ 'ի դէպս մահուան Պատրիարքի, նորա սեփական եւ Պատրիարքարանի գոյից վրայ եղած կանոնական տնօրէնութիւնն լսել եւ վերջապէս Տնօրէն ժողովէն համար առնուլ։

ՅՕԴ. 41. Ամեն տարեգլուխ Միաբանական Ընդհանուր ժողովը Տնօրէն ժողովոյ համարատուութեան տեղեկագիրն եւ Ելմը-

տացոյցն ընդունելով՝ ստուգելէ եւ վաւերացնելէ յետոյ, իր կողմէն համարատուութեան տեղեկագիր կուղղէ առ Ազգային Երեսփոխանական Ժողովն, մի առ մի նշանակելով 'ի նմին 32րդ յօդուածին տրամադրութեան համաձայն տարւոյն մէջ կատարուած Վարչական, Տնտեսական, Ելմտական, Բարեկարգական անօրինութիւնքն, ինչպէս նաեւ վերջացեալ տարւոյ հաշուեկշիռն ։

# ԳԼՈՒԽ Գ.

## ՎԱՐՉԱԿԱՆ ՊԱՇՏՕՆՔ ԵՒ ՊԱՇՏՕՆԵԱԿԱԼՔ

### Ա. ԼՈՒՍԱՐԱՐԱՊԵՏ

ՅՕԴ. 42. ԼՈՒՍԱՐԱՐԱՊԵՏԻՆ պաշտօնքն է՝

Ա. Տնօրինական Ս. Տեղեաց եւ այլ Ուխտատեղեաց եւ բոլոր Եկեղեցեաց մէջ Աստուածային պաշտաման ըստ կանոնաց Եկեղեցւոյ կատարուելուն վերատեսչութիւնը, եւ

Բ. Ս. Աթոռոյն սեփական բոլոր Եկեղեցական անօթոց, զարդուց, զգեստուց, դրբեանց, եւ այլ կահուց եւ կարասեաց անկորուստ եւ անեղծ պահպանութիւնը ։

ՅՕԴ. 43. Լուսարարապետին հոկողութեան ենթարկեալ են.

Ա. 'Ի մասին Եկեղեցական պաշտաման, Միաբանութեան բոլոր Եկեղեցական անդամներն, եւ "'ի մասնաւորի" Ծամօրհնող, Խաչ-

տօվանահայր, ժամասաց եւ ժամարար Վարդապետք, Սարկաւագունք եւ Դպիրք, Մասագործք եւ ժամկոչք, եւ՝

Բ. Ի մասին Աւանդապահութեան բոլոր Լուսարարք եւ այլ սպասարկուք Եկեղեցւոյ։

ՅՕԴ. 44. Ս. Աթոռոյ աւանդատան մէջ՝ ինչպէս նաեւ զանազան Ուխտատեղեաց եւ Ս. Տաճարաց մէջ գտնուած բոլոր եկեղեցական անօթոց, զարդուց, զգեստուց, գրրեանց, եւ այլ կահուց եւ կարասեաց մանրապատում Մայր—Տումարն Ս. Աթոռոյ Աւանդատան մէջ պահուելով, Լուսարարապետն՝ Միաբանական Ընդհանուր ժողովով ընտրուելէն, եւ սովորական արարողութեամբ Աւանդատան բանալին Ս. Գլխադրէն իր ձեռօք առնելէն ետքը, նոյն Տումարըն՝ ինչպէս նաեւ իր նախորդի մասնաւոր Տումարն՝ Աւանդատան վիճակին հետ բաղդատելով, անոնց մէջ կ'արձանագրէ իր դիտողութիւնքն եւ կը ստորագրէ։

ՅՕԴ. 45. Իւրաքանչիւր Լուսարարապետ իր ժամանակին համար մասնաւոր ժապաւինեալ Տումար մը կ'ընդունի Տնօրէն ժողովէն եւ անոր մէջ կ'արձանագրէ մանրամասնաբար.

Ա. Ի՛նչ անօթ, զգեստ, զարդ, եւ այլն, որ կը յանձնուի իրեն յԱտենի Տնօրէն ժողովոյ, եւ՝

Բ. Ի՛նչ փոփոխութիւն որ հարկ տեսնուի եւ Տնօրէն ժողովոյ որոշմամբ կը կատարուի Աւանդատան մէջ գտնուած անօթոց, զգեստուց, եւայլն վրայ, (նորոգութիւն, ձեւի փոփոխութիւն, ջնջումն, եւ այլն), եւ ա-

մէն մէկ արձանագրութեան ներքեւ թէ՛ ինքն կ՚ստորագրէ եւ թէ՛ Տնօրէն Ժողովոյ Դիւանին ստորագրել կուտայ ։

## Բ. ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

**ՅՕԴ. 46.** Ս. Պատրիարքը կ՚ընտրէ իր Փոխանորդն Տնօրէն Ժողովոյ Եպիսկոպոս անդամոց մէջէն ։

Փոխանորդին պաշտօնն է Տնօրէն Ժողովոյ անդամակցութենէ զատ, ըստ հրամանի եւ հրահանգի Ս. Պատրիարքին, յարաբերական գործերը տնօրինել եւ 'ի բացակայութեան Ս. Պատրիարքի, Նախագահել ժողովոց եւ ստորագրել պաշտօնագրերն ։

## Գ. ԵԼԵՒՄՏԻՑ ՏԵՍՈՒՉ

**ՅՕԴ. 47.** Ելեւմտից Տեսուչը կ՚ընտրուի Տնօրէն Ժողովէն եւ համարատու է նմա, եւ պաշտօնն է Ս. Աթոռոյ ելեւմտից կանոնաւոր տնտեսութեան եւ համարակալութեան վերատեսչութիւնը ։

**ՅՕԴ. 48.** Ելեւմտից Տեսչին հսկողութեան ենթարկեալ են ինչպէս Հաշուական Դիւանի յատուկ պաշտօնեայք, նոյնպէս 'ի մասին հաշուական գործողութեանց՝ բոլոր ստորակարգեալ պաշտօնակալք Միաբանութեան ։

**ՅՕԴ. 49.** Ս. Աթոռոյ ելեւմուտք կանխաւ սահմանեալ Ելմտացոյցին համեմատ կը

տնօրինուին Ելմտական տնտեսութեան զա-
նազան ճիւղերու պաշտօնակալաց ձեռօք , ո-
րոց ամենուն գործառնութեանց կանոնաւո-
րութեանը կը հսկէ Ելեւմտից Տեսուչը , եւ
չորս ամիսը անգամ մը Ս · Աթոռոյ ելմտա-
կան վիճակը կը ներկայէ Տնօրէն Ժողովոյ ։

Յօդ · 50 · Ս · Աթոռոյ ամեն տեսակ ե-
լեւմուտք սահմանեալ ելմտացոյցին համա-
ձայն կը գանձուին կամ կը վճարուին Ելեւ-
մըտից տեսչին ձեռօք · իսկ ելմըտացոյցէ դուրս
արտասովոր հասութից գանձումն եւ ծա-
խուց վճարումն կը լինի Տնօրէն Ժողովոյ մաս-
նաւոր եւ պատճառաբանեալ որոշմամբ եւ
Ս · Պատրիարքի պաշտօնագրով ։

ՅՕԴ. 51 · Ս · Աթոռոյ փոխառական
գործողութիւնք Ելեւմտից Տեսչին ձեռօք կը
կատարուին՝ Տնօրէն Ժողովոյ որոշումն եւ Ս ·
Պատրիարքի պաշտօնագիրն ստանալէ յետոյ ։

ՅՕԴ · 52 · Ս · Աթոռոյ բոլոր ելմտական
գործողութիւնք Կրկնատումարի օրինօք կար-
ձանագրուին Հաշուակալի ձեռօք որ՝ ընդ-
հսկողութեամբ Ելեւմտից Տեսչին՝ կը գործէ
եւ պատասխանատու է նմա ։

ՅՕԴ · 53 · Տնօրէն Ժողովոյ մէջ լինելիք
ամեն ելմտական տնօրէնութիւնք եւ հաշ-
ուական գործառնութիւնք Ելեւմտից Տեսչին
ներկայութեամբ եւ խորհրդակցութեամբ կը
լինին ։

## Դ․ ԴԱՐՊԱՍԸՆԿԱԼ

ՅՕԴ․ 54․ *Դարպասընկալն՝ Դրամընկալ եւ Տումարակալ Վարդապետներով իբր Դարպասական Ցանձնախումբ՝ մէկ տարուան համար Տնօրէն Ժողովէն կ՚ընտրուին եւ ամենն ալ անմիջապէս վերընտրելի են։ Ի հարկին Դարպասական Ցանձնախմբին օգնականներ կը նշանակուին Ս․ Պատրիարքին հրամանաւ։*

ՅՕԴ․ 55․ *Դարպասընկալին պաշտօնն է՝ հսկել ուխտաւորաց պատշաճապէս հիւրընկալուելուն, ընդունել նոցա Դարպասական նուէրներն, բռնել անոնց կանոնաւոր հաշիւք եւ գոյացեալ արդիւնքն գիտութեամբ Ս․ Պատրիարքին՝ Դրամընկալին միջոցաւ յանձնել Ելեւմտից Տեսչին։*

ՅՕԴ․ 56․ *Դարպասընկալին հսկողութեան ենթարկեալ են, Դրամընկալ, Տումարակալ եւ Հիւրընկալ Վարդապետք, Սենեկապանն, Շորապահը եւ Գղնձապահը։*

## Ե․ ԴՊՐՈՑԱՑ ՏԵՍՈՒՉ

ՅՕԴ․ 57․ *Դպրոցաց Տեսուչը կ՚ընտրուի Տնօրէն Ժողովէն եւ իւր պաշտօնն է՝ Ժառանգաւորաց վարժարանի, Երուսաղէմի երկսեռ Նախակրթարանաց, Բեթղեհէմի եւ Յոպպէի Վարժոցաց Վերատեսչութիւնը։*

ՅՕԴ․ 58. *Տեսչի հսկողութեան ենթարկեալ են՝ Ժառանգաւորաց վարժարանի եւ*

Նախակրթարանաց ու Վարժոցներու Ուսուցիչները եւ բոլոր ծառայողները ։

ՅՕԴ. 59. Դպրոցաց Տեսուչը ըստ որոշման Տնօրէն Ժողովոյ կը տնօրինէ Ժառանգաւորաց Վարժարանի, երկսեռ Նախակրթարանաց եւ Թեմական Վարժոցաց վերաբերեալ գործերն եւ խնդիրներն ։

ՅՕԴ. 60. Ժառանգաւորաց վարժարանը կը կառավարուի հետեւեալ հիմնական ծրագրոյն համեմատ.

Աշակերտք արդէն նախակրթեալք կ'ընդունուին ընտրութեամբ իբր ժառանգաւորք Եկեղեցւոյ 16էն մինչեւ 18 տարեկան. մի կողմէն կ'ուսանին՝

1. Կրօնագիտութիւն.

2. Լեզուագիտութիւն—Հայերէն, Տաճկերէն եւ Գաղղիերէն.

3. Քանակագիտութիւն–Թուաբանութիւն կատարեալ. Գրահաշիւ եւ Տարերք երկրաչափութեան ։

4. Պատմութիւն — Սրբազան, Եկեղեցական, Ազգային եւ արտաքին ։

5. Երգեցողութիւն — Ձայնագրութեամբ Եկեղեցական եւ Ազգային ։

6. Աշխարհագրութիւն ։

7. Տիեզերագրութիւն ։

8. Գծագրութիւն եւ Գեղագրութիւն ։

9, Տարերք Բնական Պատմութեան եւ Գիտութեանց ։

Եւ միւս կողմէն՝ կը վարժուին Եկեղեցական պաշտամանց կանոնաւորապէս Դպրութիւն ընելով Եկեղեցւոյ մէջ, եւ յետ ա-

ւտրտման դպրոցական շրջանին՝ **փոփաճող արժանաւորք** հետզհետէ կը բարձրանան Եկե-ղեցական աստիճանաց մէջ, իսկ մնացեալներն իրենց կարողութեան համեմատ զանազան գործերու մէջ կը գործածուին ըստ կանո-նագրի Միաբանութեան։

## Զ. ԴԻՒԱՆԱՊԵՏ

**ՅՕԴ. 61.** Դիւանապետը Տնօրէն Ժողո-վէն կ՚ընտրուի, եւ պաշտօնն է ճշդութեամբ պատրաստել Ժողովոյ ատենագրութիւններն՝ առաջնորդութեամբ նորա Դիւանին, եւ ե-ղած որոշմանց համեմատ պաշտօնական թըղ-թակցութիւններն եւ Դիւանական արձանա-գըրութիւններն ընել։

**ՅՕԴ. 62.** Դիւանատան ամէն կարեւոր գրեր եւ արձանագրութիւններ կը պահպան-ուին կանոնաւորապէս ցուցակագրեալ՝ ընդ հսկողութեամբ եւ պատասխանատուութեամբ Դիւանապետին։

**ՅՕԴ. 63.** Դիւանատան պաշտօնեայք ի-րենց օրինաւոր պաշտօնավարութեան մասին պատասխանատու են Դիւանապետին։

## Է. ԹԱՐԳՄԱՆ

**ՅՕԴ. 64.** Թարգմանը Տնօրէն Ժողովէն ընտրուելով իր պաշտօնը կը վարէ ընդ իշ-խանութեամբ Ս. Պատրիարքին եւ ընդ հըս-կողութեամբ Փոխանորդին՝ համաձայն հրա-հանգաց Տնօրէն Ժողովոյ։

ՅՕԴ. 65. Թարգմանը գործադիր է յարաբերութեանց ընդ տեղական Կառավարութեան, ընդ Օտարազգի Վանօրայս եւ Պաշտօնեայս. եւ հսկող է բարեկարգութեան Քրձազգեաց Միաբանից, Ուխտաւորաց եւ Երուսաղէմի հայ ժողովրդոց, եւ միանգամայն անդամ է Կառավարութեանն Իտարէի ժողովոյ՝ յանուն Ս. Աթոռոյ։

## Ը. ՏԵՍՉՈՒԹԻՒՆՔ ԿԱԼՈՒԱԾՈՑ

ՅՕԴ. 66. Տնօրէն ժողովը կ՚ընտրէ կալուածական բոլոր գործակալներն՝ յԵրուսաղէմ, ՚ի շրջակայս, եւ ՚ի զանազան գաւառըս. յԵրուսաղէմ Վարձընկալի ձեռօք կը հաւաքէ վարձքերը, Շինուածապետի ձեռօք կը կատարէ բոլոր նորոգութեան գործերը. իսկ դրսերը նոյն գործերն կը կատարէ Տեսչաց եւ Գործակալաց միջոցաւ։

ՅՕԴ. 67. Ամեն ծախք ելնելէն ետքը՝ տարեկան գէ՛թ 3 առ 100 արդիւնք չը բերող կալուածներն, եւ հեռաւորութեան կամ այլ պարագայից պատճառաւ կանոնաւոր տնտեսութիւնը դժուարին կալուածները՝ (՚ի բաց առեալ անոնք որ չը ծախուելու պայմանաւ կտակեալ են Ս. Աթոռոյ), ծախուելու եւ անոնց տեղ արդիւնաւոր կալուածներ գնուելու, եւ կամ նոր գետին գնելու կամ նոր շէնք շինելու որոշում տըրուած ժամանակ, Տնօրէն ժողովը կը գործադրէ զանոնք կամ Կալուածական պաշտօնէից ձեռօք եւ կամ յարմար դատած եղանակաւ։

## Թ. ԹԱՆԳԱՐԱՆ

**ՅՕԴ. 68.** *Ս. Աթոռոյ Թանգարանը՝ ձեռագիր եւ տպեալ մատեաններով, հնագիտական նիւթերով եւ բնական Պատմութեան եւ Գիտութեանց եւ Գեղարուեստից վերաբերեալ առարկաներով օժտեալ՝ հանդերձ իւր ընթերցարանով Թանգարանապետի մը տնօրէնութեան ներքեւ կը տնտեսուի՝ Ազգին եւ Միաբանական Ուխտին օգտակար ըլլալու եղանակաւ . եւ Տնօրէն Ժողովը կը հսկէ անոնց ըստ օրինի պահպանութեան եւ զարգացման ։*

## Ժ. ՏՊԱՐԱՆ

**ՅՕԴ. 69.** *Ս. Աթոռոյ Տպարանը՝ հանդերձ Գրավաճառութեան սենեկով, Տպարանապետի մը տնտեսութեան յանձնուելով, Տնօրէն Ժողովը կը հսկէ երկուքին ալ կանոնաւորապէս, եւ Ազգին եւ Միաբանական Ուխտին բարոյապէս եւ նիւթապէս օգտակար ըլլալու կերպով տնտեսուելուն ։*

**ՅՕԴ. 70.** *Սոյն սկզբամբ Տպարանապետը Տնօրէն Ժողովոյ որոշմամբ, եւ Ս. Պատրիարքի* Հրամանաւ *կը տպագրէ միայն այն գրքերը որ կրօնից եւ բարոյականի դէմ ոչ ինչ չեն պարունակեր եւ որ՝ (եթէ դուրսէն ծախքը վճարելով ապսպրուած չեն) դիւրամատչելի գնով կրնան չափաւոր ժամանակի մէջ ծախուիլ շահաւոր եղանակաւ ։*

## ԺԱ. ՄԱՏԱԿԱՐԱՐ

ՅՕԴ. 71. Մատակարարը կ'ընտրուի Տընօրէն Ժողովէն եւ պաշտօնն է՝ Ընդհանուր Միաբանութեան սննդեան տնտեսութիւնը, զոր կը կատարէ Ելմտացոյցով Նախասահմանեալ եղանակաւ եւ ողջապահիկ կանոնաց հետեւողութեամբ. իւր հսկողութեան ենթարկեալ են՝ Ցորենապահը, Մառանապետը, Խոհարարք, Սեղանապետք, Սրճեփ եւ Հացագործը։

ՅՕԴ. 72. Մատակարարը պարտաւոր է իւր պաշտօնին վերաբերեալ բոլոր պարէններն եւ նիւթերն, ինչպէս նաեւ Եկեղեցեաց ձէթն, ժամանակին որոշեալ չափով եւ քանակութեամբ առնել եւ ամպարել, եւ աչալրջութեամբ հսկել կանոնաւորապէս տըտեսուելուն։

## ԺԲ. ՀԱՆԴԵՐՁԱՊԵՏ

ՅՕԴ. 73. Հանդերձապետը կ'ընտրուի Տնօրէն Ժողովէն եւ իւր պաշտօնն է՝ Միաբանութեան տարեկան հագուստը ըստ որոշեալ տարազու եւ քանակութեան պատրաստել, եւ Հանդերձարանի վերաբերեալ ամէն նիւթերն հոգատարութեամբ պահպանել։

## ԺԳ. ԲԺԻՇԿ ԵՒ ԴԵՂԱԳՈՐԾ

ՅՕԴ. 74. Միաբանական հիւանդաց այցելութեան հոգն ու խնամքը՝ Բժիշկին, եւ

Դեղարանի տնտեսութիւնը՝ Դեղագործին կը յանձնուի ընդ հսկողութեամբ Թարգմանին, որ անոնց ճշդիւ եւ կանոնաւորապէս կատարուելուն պատասխանատու է։

### ԺԴ. ՊԱՏՐ. ՓՈԽԱՆՈՐԴ Ի ՊՕԼԻՍ

ՅՕԴ. 75. Պատրիարքական Փոխանորդն Ս. Աթոռոյ ներկայացուցիչն է 'ի Կ. Պօլիս, միջնորդ յարաբերութեանց ընդ երկուս Աթոռս Պատրիարքականս, Տեսուչ կալուածոց եւ Գործադիր Պատրիարքական եւ Վարչական յանձնարարեալ Աթոռապատկան ամեն գործոց։

ՅՕԴ. 76. Պատրիարքական Փոխանորդն կ'ընտրուի Տնօրէն Ժողովէն Ս. Պատրիարքի առաջարկութեամբ, սոյն Ժողովէն կ'ընդունի իւր հրահանգն եւ պատասխանատու է նմա։

### ԺԵ. ՏԵՍՈՒՉՔ

ՅՕԴ. 77. Տեսուչներն Ս. Աթոռոյ ներկայացուցիչներն են՝ իրենց պաշտօնավարութեան յատկացեալ տեղուանք, եւ կը վարուին մասնաւոր հրահանգաց համեմատ, զոր Տնօրէն Ժողովը կուտայ պաշտօնի կոչած ժամանակ։

ՅՕԴ. 78. Տեսուչներն՝ ինչպէս նաեւ Փոխանորդն 'ի Կ. Պօլիս, իրենց Տեսչութեան ենթարկեալ Միաբանից եւ Պաշտօնակալաց (Ժամարար, Սարկաւագ, Դպիր, Թարգման,

*Պահակ ձայնի, եւ այլն) Պաշտօնավարութեան հսկող եւ պատասխանատու են ։*

## ԺԶ. ԳՈՐԾԱԿԱԼՔ ԵՒ ԳԱՆՁԱՊԵՏՔ

**ՅՕԴ. 79.** *Այն տեղերը, ուր կարելի չ'է Միաբանութենէ յատուկ Եկեղեցական Տեսուչներ դնել, պատուաւոր եւ վստահելի աշխարհական գործակալներ կը կարգուին եւ կը հաստատուին որոշմամբ Տնօրէն Ժողովոյ, նոյն վիճակին մէջ եղած Ս. Աթոռոյ Կալուածոց Տեսչութիւնը ընելու եւ իրենց յանձնարարեալ ուրիշ Աթոռապատկան գործերը կատարելու ։*

**ՅՕԴ. 80.** *Գանձապետք նոյնպէս կ'ընտրուին Տնօրէն Ժողովէն եւ կը հաստատուին Ս. Պատրիարքի կոնդակաւ, եւ պաշտօն ունին իրենց գտնուած տեղւոյն եւ վիճակային Եկեղեցեաց մէջ յանուն Ս. Երուսաղէմի շըրջագայած գանձանակներու արդիւնքն հասցնել 'ի Ս. Աթոռն իրենց տրուած հրահանգաց համեմատ ։*

## ԺԷ. ԱՅՑԵԼՈՒՔ ԵՒ ՆՈՒԻՐԱԿՔ

**ՅՕԴ. 81.** *Այցելուք եւ նուիրակք մասնաւոր պաշտօնակալք են, որ կը ղրկուին* առժամեայ պաշտօնով *պէտք եղած տեղուանք, եւ կը վարուին ըստ հրահանգաց զոր կ'ընդունին Տնօրէն Ժողովէն պաշտօնի կոչուած ժամանակ ։*

# ԳԼՈՒԽ Գ.

## ՎԱՐՁԱԿԱՆ ԸՆԹԱՑՔ

ՅՕԴ. 82. ԱՄԷՆ Պաշտօնական նամակ եւ խնդրագիր Ս. Պատրիարքին կ'ուղղուի, որ Դիւանատունը կը յանձնէ յարձանագրութիւն, եւ ապա կը ներկայացնէ Ժողովին 'ի տնօրէնութիւն, իսկ այն գրերը որոնք նախաքննութեան կը կարօտին, Ժողովին ներկայացնելէ առաջ կը յանձնէ պատկանեալ պաշտօնէին 'ի նախաքննութիւն։

ՅՕԴ. 83. Թէ Միաբանական Ընդհանուր Ժողովին եւ Թէ Տնօրէն Ժողովին որոշումներն պարունակող գրութիւնք կ'ստորագրուին Ս. Պատրիարքէն, միայն Թէ Ընդհանուր Ժողովոյ պաշտօնագիրք, պիտի կրեն նաեւ Դիւանի ստորագրութիւնն։

ՅՕԴ. 84. Ընդհանուր եւ Տնօրէն Ժողովոց որոշումները կը գործադրուին Ս. Պատրիարքի կողմէն համաձայն նոցա արձանագրութեանց եւ որոշմնագրոց. եթէ Ս. Պատրիարքը Տնօրէն Ժողովոյ որոշման տարակարծիք գտնուի, երկրորդ անգամ հրաւէր կը կարդայ Ժողովոյն անգամ մ'ալ խորհրդածել նոյն խնդրոյն վրայ, եւ եթէ դարձեալ համաձայնութիւն չի գոյանայ, խնդիրը կը յանձնէ Միաբանական Ընդհանուր Ժողովոյն եւ եթէ սորա որոշումն ալ չընդունի եւ չը

գործադրէ, այն ատեն խնդիրն կը տեղեկագրուի առ Ազգային Երեսփոխանական Ժողովն որուն որոշումն պարտաւոր է ընդունիլ եւ գործադրել

## ԳԼՈՒԽ Է.

### ՎԵՐԱՔՆՆՈՒԹԻՒՆ

ՅՕԴ. 85. ՍՈՅՆ Կանոնագիրը վերաքննելի է Ազգային Երեսփոխանական Ժողովոյ վաւերացման օրէն հաշուելով չորս տարի ետքը, եւ վերաքննութիւնք Միաբանական Ընդհանուր Ժողովով կը կատարուի, եւ Ազգային երեսփոխանական ժողովոյ կը մատուցուի 'ի վաւերացումն։

ՅՕԴ. 86. Մինչեւ վերաքննեալ կէտերուն Ազգային Երեսփոխանական Ժողովով վաւերացումը՝ հին տրամադրութիւնք անփոփոխ 'ի գործադրութեան կը պահուին։